Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 1



1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32.
ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին. Հեռախոս՝ 2—02—87:

# 25 ՏԱՐԻ ԱՌԱՆՑ ԼԵՆԻՆԻ, ՍՏԱԼԻՆԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ, ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

*Այս տարվա հունվարի 21-ին լրանում է բոլշևիկյան պարտիայի հիմնադիր, սովետական կարգերի ստեղծող, մեր մեծ ուսուցիչ և իմաստուն առաջնորդ Վլադիմիր Իլյիչ Լենինի մահվան 25-ամյակը: Անցած 25 տարիների ընթացքում սովետական ժողովուրդը բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Ստալինի գլխավորությամբ ընթանալով Լենինի գծած ուղիով, անդադրում կերպով իրականացնելով կյանքում Լենինի մեծ պատգամները հասել է համաշխարհային-պատմական հաղթանակների, ծաղկման, բարգավաճման ու աննախընթաց հզորության հասցնելով մեր սիրելի Հայրենիքը— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը:*

*Լենինը պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ էր: Նա ռևոլյուցիայի մեծ գործին նվիրեց իր ամբողջ բազմաբեղուն ու հրաշալի կյանքը՝ առանց մնացորդի, իր արյունը՝ կաթիլ առ կաթիլ:*

Լենինի մահվան առաջին տարեդարձին ընկեր Ստալինը, Լենինի ամենահավատարիմ բարեկամը, ամենամերձավոր զինակիցն ու նրա մեծ գործի հանճարեղ շարունակողը ասաց. «Հիշեցեք, սիրեցեք, ուսումնասիրեցեք Իլյիչին, մեր ուսուցչին, մեր առաջնորդին»։ Ընկեր Ստալինը, ինչպես ամեն գործում, այնպես էլ այս դեպքում անձնական փայլուն օրինակ տվեց խոսքի ու գործի միասնության։ Նա զարգացրեց ու առաջ մղեց Լենինի անմահ ուսմունքը—լենինիզմը, ցույց տալով, որ առանց լենինիզմի պայծառ լուսարձակի մեր պարտիան, բանվոր դասակարգը կխարխափեին անորոշության խավարում։ Լենինիզմը դա մի գիտություն է հասարակության մասին, հասարակության զարգացման օրենքների մասին, պրոլետարական ռևոլյուցիայի զարգացման օրենքների մասին, սոցիալիստական շինարարության զարգացման օրենքների մասին, կոմունիզմի հաղթանակի մասին, գիտություն, որը ընդունակ է շարժմանը վստահություն ներշնչել, տալ կողմնորոշման ուժ և շրջապատող անցքերի ներքին կապը ըմբռնում, օգնել հասկանալու ոչ միայն այն, թե ինչպես և դեպի ուր են շարժվում դասակարգերը ներկայումս, այլև ինչպես և դեպի



ուր պետք է շարժվեն նրանք ամենամոտիկ ապագայում։

Ընկեր Ստալինը իր պողպատակուռ ձեռքում ամուր ու բարձր պահած լենինիզմի անմահ դրոշը հաղթանակից հաղթանակ է առաջնորդում սովետական ժողովրդին՝ կոմունիզմի վիթխարահսկա շենքի կառուցման ճանապարհով։ Լենինիզմի դրոշը ընկեր Ստալինի ձեռքում այսօր դարձել է ազնվության, վեհության, Լենինի-Ստալինի պարտիայի գաղափարների տարածման, հաղթանակների նվաճման սիմվոլ։ Լենինիզմի դրոշը— դա սովետական ժողովրդի կողմից կոմունիզմի կառուցման դրոշն է, միջազգային աշխատավորության՝ հանուն դեմոկրատիայի և խաղաղության, ընդդեմ իմպերիալիզմի մղվող պայքարի դրոշն է, դա աշխատավոր մարդկության լուսավոր ու պայծառ ապագայի համար մղվող պայքարի ամենահաղթ ու ինտերնացիոնալ դրոշն է։

1924 թվի հունվարի 26-ին Սովետների Համամիութենական երկրորդ համագումարում, Լենինի մահվան առթիվ ընկեր Ստալինը պարտիայի անունից մեծ երդում տվեց՝ անշեղ կերպով միշտ ընթանալ Լենինի գծած ճանապարհով, լենինիզմի անպարտելի դրոշի ներքո։ Առաջնորդի թարմ շիրիմի առաջ

ընկեր Ստալինը նշում ավելց. պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան։
Անցած 25 տարիների ընթացքում բոլշևիկների պարտիան ընկեր Ստալինի գլխավորությամբ անսասելի բարձրության ու հզորության հասցրեց պրոլետարիատի դիկտատուրան, նրա սովետական սոցիալիստական պետությունը։

ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում ընկեր Ստալինը հարստացրեց մարքս-լենինյան ուսմունքը պետության մասին, ցույց տալով, որ սոցիալիստական պետությունը սոցիալիզմի և կոմունիզմի համար բանվորների և գյուղացիների մղվող պայքարի գլխավոր զենքն է հանդիսանում։ Ընկեր Ստալինը ծավալուն կերպով շարադրեց սովետական սոցիալիստական պետության մասին ուսմունքը, ուսմունք կոմունիզմի ժամանակվա պետության մասին, որը գոյություն կունենա կապիտալիստական շրջապատման առկայության պայմաններում։

Հայրենական պատերազմի տարիներին ընկեր Ստալինը Սովետական Սոցիալիստական պետության մասին լենինյան ուսմունքը հարստացրեց Սովետական Միության հզորության աղբյուրների մասին ուսմունքով։

Սովետական սոցիալիստական պետության



կենսունակությունն ստուգվեց այն բանում որ նա ոչ միայն դիմացավ գերմանա-ֆաշիստական և ճապոնական իմպերիալիզմի դեմ մղած երկարատև ու ծանր պատերազմի փորձություններին և այդ պատերազմից դուրս եկավ էլ ավելի ամրապնդված ու հզորացած, այլև կապիտալիստական ամենաուժեղ երկրի համար անգամ անհասանելի տեմպերով բուժում է թշնամիների կողմից մեր երկրին հասցրած վնասները, ժողովրդական տնտեսության զարգացումը առաջ մղելով մինչպատերազմյան մակարդակից։ ՍՍՌՄ-ն այսօր ապրում է տնտեսության, կուլտուրայի, գրականության և արվեստի, ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության աննախընթաց զարգացում ու բարգավաճում, որոնք էլ ավելի են բարձրացնում նրա միջազգային դերն ու նշանակությունը։ ՍՍՌՄ-ի պատմական մեծ փորձը օգնում է սոցիալիզմի ճանապարհով ընթացող ժողովրդական դեմոկրատիայի երկրների ծաղկման ու բարգավաճման գործին։

Պրոլետարական դիկտատուրան մեր երկրում ստեղծվել է բանվորների և գյուղացիների դաշինքի հիման վրա։ «Դա,— ասում է ընկեր Ստալինը,— Սովետների իշխանության առաջին և արմատական հիմքն է»։

Լենինի մահից հետո բոլշևիկյան պարտիան, ընկեր Ստալինը չխնայեցին իրենց ուժերը ամրապնդելու և անխախտ դարձնելու այդ դաշինքը։

Ընկեր Ստալինը, զարգացնելով Լենինի կոոպերատիվ պլանը և ելնելով այդ պլանի դրույթներից մշակեց գյուղատնտեսության կոլեկտիվացման և համատարած կոլեկտի-
վացման հիման վրա կուլակության, որպես դասակարգի վերացնելու քաղաքականությու-
նը, որը և հաջողությամբ կենսագործվեց կյանքում։ Համատարած կոլեկտիվացման հիման վրա կուլակությունը որպես դասա-
կարգ լիկվիդացնելու նշանակության մասին ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասըն-
թացում ասված է. «Այդ ռևոլյուցիոն ամենա-
խոր հեղաշրջում էր, մի թռիչք հասարակու-
թյան հին որակական կացությունից դեպի նոր որակական կացությունը, մի հեղաշըր-
ջում, որն իր հետևանքներով 1917 թվականի հոկտեմբերի ռևոլյուցիոն հեղաշրջմանը հա-
վասար նշանակություն ուներ» (էջ 418)։

Գյուղացիության վերաբերմամբ պարտիա-
յի քաղաքականությունն անց էր կացվում ժողովրդի թշնամիների՝ տրոցկիստների, բուխարինականների դեմ մղվող դաժան պայքարում, թշնամիներ, որոնք փորձում էին



խորտակել բանվոր դասակարգի դաշինքը գյուղացիության հետ։

Ջախջախելով իր թշնամիներին, պարտիան ընկեր Ստալինի ղեկավարությամբ սոցիա-
լիստական մեծ վերափոխություններ կատա-
րեց գյուղում։ «Այդ վերափոխությունների հե-
տևանքով,— ասում է ընկ. Մոլոտովը,— մենք հասանք այն բանին, որ բանվորների և գյուղացիների դաշինքը բարձրացվեց բարձր աստիճանի, դառնալով սոցիալիստական հասարակության բարոյա-քաղաքական միասնություն, որի նմանը չունի համաշ-
խարհային պատմությունը»։

Բանվորների և գյուղացիների լիակատար հավասարությունը Ստալինյան Կոնստիտու-
ցիայով, բանվոր դասակարգի և գյուղացիու-
թյան դաշինքը բարձրացրեց նոր, ավելի բարձր աստիճանի։ ՍՍՌՄ-ն բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է։

Հայրենական պատերազմի տարիներին, դիմանալով բոլոր փորձություններին, կոլխո-
զային կարգը ՍՍՌՄ-ում ապահովեց ռազմա-
ճակատն ու թիկունքը պարենամթերքով և հումքով։ Բանվոր դասակարգի և գյուղացիու-
թյան դաշինքի խզման նկատմամբ ֆաշիստ-
ների կառուցած ցնորամիտ հաշիվները տա-

պալվեցին։ Բանվորներն ու գյուղացիները ձեռք ձեռքի տված կրծքով պաշտպանեցին իրենց սոցիալիստական Հայրենիքը ֆաշիստական ոհմակներից։

Մեր գյուղատնտեսության հետպատերազմյան հաջողությունները նոր ուժով են ցույց տալիս կոլխոզային կարգի անպարտելի ուժը։ Այս տարի ՍՍՌՄ-ում հացահատիկի համախառն բերքը հասավ նախապատերազմյան մակարդակին, իսկ յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունն անցավ նախապատերազմյանից։ Սովետական ժողովրդի աշխատանքային խանդավառությունը դրսևորող սոցիալիստական մրցության լայն ծավալումը, արդյունաբերական ձեռնարկությունների մըրցությունը կոլխոզների, ՄՏ կայանների, սովխոզների հետ, նրանց փոխադարձ օգնությունը ստալինյան հնգամյակը հաջողությամբ և ժամկետից շուտ կատարելու համար վկայում է բանվորների և գյուղացիների դաշինքի հետագա էլ ավելի ամրապնդման մասին։

Հայաստանի բանվորները մեծ խանդավառությամբ և նվիրվածությամբ պայքար ծավալեցին ստալինյան հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար և դեկտեմբերի 13-ին 1948 թվի արդյունաբերության պե-



տական պլանը կատարեցին 100 տոկոսով։ Այսպիսով 11 ամիս և 13 օրում երկրին 16,6 տոկոս ավելի արտադրանք տվեցին, քան 1947 թվին, իսկ 1940 թվի համեմատությամբ ռեսպուբլիկայի արդյունաբերության արտադրանքը գերազանցեց 47,3 տոկոսով։ Հայաստանի գյուղացիությունը 1948 թվին ավելի բարձր բերք ստացավ սոցիալիստական դաշտերից և 1949 թվականը դիմավորեց պետական պարտավորությունները բոլոր գծերով լրիվ կատարած, լի աշխատանքային նորանոր սխրագործությունների կատարման պատրաստակամությամբ։

Սովետների ռեսպուբլիկայի երկրորդ հիմքը — սովորեցնում է ընկեր Ստալինը — հանդիսանում է մեր երկրի տարբեր ժողովուրդների, ազգությունների սերտ դաշինքը։

Անցած 25 տարում ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն անասելի բարձրության է հասել և այդ բարեկամությունը մարմնավորող Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունն իր ամրությամբ ու հզորությամբ վիթխարի չափերով զարգացել ու ընդլայնվել է։ Սովետական իշխանության հաստատման հենց առաջին օրից մեկ անգամ չէր, որ բուրժուազիան ու նրա տեսաբանները գուշակություններ էին անում

Սովետական Միության անկայունության ու նրա տապալման մասին, նկատի ունենալով նրա բազմազգ կազմը։ Ի դեպ, գերմանական ֆաշիստները և նրանց խեղկատակ ֆյուրերը, հարձակվելով ՍՍՌՄ-ի վրա, հույս էին դրել և այն բանի վրա, որ Սովետական Բանակի հենց առաջին անհաջողությունների դեպքում կռիվ կառաջանա Սովետական տարբեր ազգությունների միջև և երկիրը կբաժանվի առանձին մասերի, որը կհեշտացնի ֆաշիստների հաղթանակը։

Ինչպես ֆաշիստների, նույնպես և բոլոր ու ամեն կարգի բուրժուական «տեսաբանների» հաշիվները սխալ դուրս եկան։ «Պատերազմը ցույց տվեց, որ սովետական բազմազգ պետական կարգը հաջողությամբ բռնեց քննությունը, էլ ավելի ամրապնդվեց պատերազմի ժամանակ և դուրս եկավ միանգամայն կենսունակ պետական կարգ»։ Դուրս է գալիս «...որ սովետական պետական կարգը հանդիսացավ բազմազգ պետության օրինակ, որ սովետական պետական կարգը պետական կազմակերպության այնպիսի սիստեմ է, որտեղ ազգային հարցը և ազգերի համագործակցության պրոբլեմը ավելի լավ են լուծված, քան որևէ այլ բազմազգ պետության մեջ» (Ստալին)։ Ազգային հարցի լուծման,



ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար մենք պարտական ենք Լենինի-Ստալինի պարտիային և նրա իմաստուն առաջնորդ Ստալինին։

«Որպես մի հսկա ժայռ կանգնած է մեր երկիրը՝ շրջապատված բուրժուական պետությունների օվկիանոսով։ Ալիքներ ալիքների հետևից գլորվում են նրա վրա՝ սպառնալով հեղեղել ու խորտակել նրան» (Ստալին)։ Դրա համար էլ ընկեր Ստալինը իր պատմական երդման մեջ ասաց. արդ երդվենք, ընկերներ, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Սովետական Բանակը, մեր Սովետական Նավատորմը։

25 տարիների ընթացքում անճանաչելիորեն փոխվել են մեր Սովետական Բանակը, մեր Սովետական Նավատորմը, մեր Սովետական Ավիացիան։ Գերմանա-ֆաշիստական ճիվաղների դեմ սովետական ժողովրդի մղած մեծ պատերազմում Սովետական Զինված ուժերը ոչ միայն կարողացան պաշտպանել մեծ Հոկտեմբերի նվաճումները, սովետական ժողովրդի անկախությունն ու ազատությունը, մեր սիրելի Հայրենիքը, այլև գլխովին ջախջախեցին մինչև ատամները զինված և վտանգավոր թշնամուն՝ իրեն իսկ որջում։ Կատաղի թշնամու նկատմամբ տարած

«Մեր հաղթանակը,— ասում է ընկեր
Ստալինը,— նշանակում է, որ հաղթեցին
Սովետական Զինված ուժերը», որ նա «...դի-
մացավ պատերազմի բոլոր ձախորդություն-
ներին, գլխովին ջախջախեց մեր թշնամիների
բանակները և պատերազմից դուրս եկավ
հաղթող»։ Այնուհետև ընկեր Ստալինը ասում
է. «Պատերազմը ցույց տվեց, որ Սովետա-
կան Բանակը ոչ թե «կավե ոտներով հսկա» է,
այլ մեր ժամանակի ամենաառաջնակարգ
բանակը, որն ունի միանգամայն ժամանա-
կակից սպառազինություն, ամենափորձված
հրամանատարական կազմ և բարոյական ու
մարտական բարձր հատկություններ։ Չպետք
է մոռանալ, որ Սովետական բանակը այն
նույն բանակն է, որը գլխովին ջախջախեց
գերմանական բանակը, որը դեռևս երեկ սար-
սափ էր տարածում եվրոպական պետություն-
ների բանակների վրա»։

Անհրաժեշտ է, որ այս հանգամանքը հաս-
կապես լավ հիշեն և երբեք չմոռանան իմ-
պերիալիստական նոր պատերազմի հրձիգ-
ները, անգլո-ամերիկյան բլոկի ամենատաք
ռազմատենչ գլուխները, ինչպես նաև սո-
ցիալ-ռեֆորմական պարտիաներն ու նրանց
ճարպակալած պարագլուխները։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում



աշխարհը բաժանվել է երկու՝ իրար դեմ ու
դեմ կանգնած ճամբարների։ Այդ ճամբարներից
մեկը համախմբում է համաշխարհային երկ-
րորդ պատերազմից հետո իմպերիալիզմից
անջատված և սոցիալիզմի կառուցման ուղին
բռնած ժողովրդական դեմոկրատիայի երկր-
ները՝ մեծ ու հզոր Սովետական Միության
գլխավորությամբ։ Մյուս ճամբարը՝ իմպերիա-
լիստական պետությունների ճամբարը գլխավո-
րում է ԱՄՆ-ը։ Այդ երկրորդը՝ նոր իմպե-
րիալիստական պատերազմների հրահրման,
իմպերիալիստական ոտնձգությունների,
ԱՄՆ-ի էքսպանսիոնիստական քաղաքակա-
նությունն արտահայտող ճամբարն է, որը ձգ-
տում է օգտագործել կապիտալիստական եր-
կըրներում պատերազմից հետո ստեղծված
դժվարությունները և իր դոլլարների ուժը,
ոչնչացնել մյուս երկրների, այդ թվում նաև
Անգլիայի ու Ֆրանսիայի տնտեսական, քա-
ղաքական ազատությունները և ազգային ան-
կախությունն ու ինքնուրույնությունը, բոլորը
ենթարկելով ԱՄՆ-ի ղեկավար կլիկի էգոիս-
տական շահերին։

ՍՍՌՄ-ն, իր շուրջը համախմբելով ժողո-
վրրդական դեմոկրատիայի երկրներին, հե-
տևողական պայքար է մղում ռեակցիայի ու
իմպերիալիզմի ուժերի, նոր պատերազմի

հրձիգների դեմ, վճռական կերպով մերկաց-
նում է նրանց իմպերիալիստական-ֆաշիս-
տացող պլանները, ոտքի հանում ժողովուրդ-
ներին և առաջին հերթին կապիտալիստական
երկրների բանվոր դասակարգին՝ պայքար
մղելու հանուն ազատության, դեմոկրատիայի
ու խաղաղության։

Օրը օրին աճում է ՍՍՌՄ-ի միջազգային
դերն ու նշանակությունը։ Իմպերիալիստա-
կան պետությունները, որոնք մխրճվել են ի-
րենց իսկ հակասությունների մեջ, առանց
ՍՍՌՄ-ի մասնակցության անընդունակ են
լուծելու միջազգային քաղաքականության թեկուզ
թե շատ կարևոր մի որևէ հարց։

Վ. Ի. Լենինի մահից հետո քառորդ դար է
անցել։ Այդ ժամանակամիջոցում բոլշևիկնե-
րի պարտիան, Լենինի հանճարեղ գործի շա-
րունակող մեծ Ստալինի ղեկավարությամբ
գլխավորելով պարտիայի պայքարը հակալե-
նինյան բոլոր թեքումների դեմ, վճռական գո-
տեմարտում ջախջախելով ու դեն նետելով
նրանց, անասելի բարձրության հասցրեց մեր
բոլշևիկյան պարտիայի շարքերի գաղափա-
րական ու կազմակերպական միաձուլությունը
և կոփվածությունը, անսահմանորեն աճեց ու
բարձրացավ պարտիայի դերն ու հեղինակու-



թյունը սովետական ողջ ժողովրդի համար,
սերտորեն համախմբելով նրան Լենինի-
Ստալինի մեծ պարտիայի շուրջը, ընկեր
Ստալինի շուրջը։ Բոլշևիկյան պարտիայի և
սովետական ժողովրդի կապը էլ ավելի ամ-
րապնդվեց հատկապես Հայրենական Մեծ
պատերազմի տարիներին։ Ընկեր Ստալինը
այդ մասին ասում է. «Ինչպես խաղաղ շի-
նարարության տարիներին, այնպես էլ պա-
տերազմի օրերին, սովետական ժողովրդի ղե-
կավար և ուղղություն տվող ուժը հանդիսա-
ցավ Լենինի պարտիան, բոլշևիկների պար-
տիան։

Ոչ մի պարտիա չի ունեցել և չունի այնպի-
սի հեղինակություն ժողովրդական մասսա-
ների մեջ, ինչպես մեր բոլշևիկյան պար-
տիան։ Եվ դա հասկանալի է։ Բոլշևիկների
պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի
բանվորները, գյուղացիները և ինտելիգեն-
ցիան իրենց համար ազատություն նվաճեցին
և կառուցեցին սոցիալիստական հասարակու-
թյուն. Հայրենական պատերազմի օրերին
պարտիան մեր առաջ կանգնեց որպես ֆա-
շիստական զավթիչների դեմ մղվող համա-
ժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազ-
մակերպողը։ Պարտիայի կազմակերպական
աշխատանքը միավորեց և դեպի ընդհանուր

նպատակին ուղղեց սովետական մարդկանց
բոլոր ջանքերը, ենթարկելով մեր բոլոր ու-
ժերն ու միջոցները թշնամու ջախջախման
գործին։ Պատերազմի ժամանակամիջոցում
պարտիան էլ ավելի հարազատ դարձավ ժո-
ղովրդին, էլ ավելի սերտորեն կապվեց աշ-
խատավորների լայն մասսաների հետ»
(Ստալին, «Սովետական Միության Հայրե-
նական Մեծ պատերազմի մասին», էջ 130)։

Բոլշևիկների պարտիան, միշտ հարազատ
լենինիզմի դրոշին, հետպատերազմյան ժա-
մանակաշրջանում ևս գլխավորելով սովետա-
կան ժողովրդի աշխատանքային ստեղծագոր-
ծական անսպառ խանդավառությունը վճռա-
կան հաղթանակներ է ձեռք բերում խաղաղ
շինարարության բնագավառում, սոցիալիզ-
մից աստիճանաբար կոմունիզմին անցնելու
համար մղվող պայքարում։

ՍՍՌՄ-ն և ՀամԿ(բ)Պ պարտիան, մեծ
Ստալինի ղեկավարությամբ, պրոլետարական
ինտերնացիոնալիզմի չգերազանցված օրինակ
են ցույց տալիս արտասահմանյան եղբայրա-
կան կոմպարտիաներին։ ՀամԿ(բ)Պ-ն իր
պայքարի հարուստ փորձով խոշորագույն
օգնություն է ցույց տալիս ժողովրդական դե-
մոկրատիայի երկրների ժողովուրդներին, ո-
րոնք համախմբված այդ երկրների կոմունիս-



տական պարտիաների շուրջը, առաջ են գնում
սոցիալիզմի կառուցման ճանապարհով։
ՍՍՌՄ-ն և ՀամԿ(բ) պարտիան օգնում են
արտասահմանյան կոմպարտիաներին, բան-
վոր դասակարգին և աշխատավորությանը
մերկացնելու ԱՄՆ-ի իմպերիալիստական
շրջանների ռազմատենչ քաղաքականությունը,
այսպես կոչված տխրահռչակ «Մարշալի
պլանի» էությունը, նրանց սեփական երկր-
ների սոցիալ-դեմոկրատական պարտիաների
դավաճանությունը և մասսաներին պայքարի
հանելու հանուն ազատության, դեմոկրա-
տիայի ու խաղաղության։

ՀամԿ(բ)Պ-ն, մույս եղբայրական կոմպար-
տիաների հետ միասին, մերկացրին Հարավ-
սլավիայի կոմպարտիայի ղեկավարությունը,
Տիտոյի կլիկը, որը դավաճանելով Հարավ-
սլավիայի ժողովրդի արմատական շահերին,
դավաճանելով մարքսիզմի-լենինիզմի ուս-
մունքին, բռնելով նացիոնալ-ռեֆորմիստա-
կան ուղին, քայլ առ քայլ գլորվում է իմպե-
րիալիզմի լագերը։ ՀամԿ(բ)Պ-ն օգնում է Հա-
րավսլավիայի կոմպարտիային՝ դեն նետելու
Տիտոյի գլխավորած դավաճանական ղեկա-
վարությունը և պարտիան վերադարձնելու
կոմունիստական պարտիաների հարազատ
ընտանիքի գիրկը։

Անցած 25 տարիների ընթացքում Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ մեր ժողովուրդը կառուցեց սոցիալիզմ։

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ մեր ժողովուրդը իր մեծ նվաճումները պաշտպանեց պատերազմներից ամենադաժան պատերազմում, պատմական հաղթանակ տանելով գերմանական և ճապոնական իմպերիալիստների դեմ։

Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ ՍՍՌՄ ժողովուրդները վերսկսեցին իրենց խաղաղ ստեղծարար աշխատանքը և հաջողությամբ լուծում են կոմունիստական հասարակության կառուցման խնդիրները։

Լենինի ու Ստալինի դրոշը միլիոնների մեծ ու անպարտելի դրոշն է։

Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

---

## ՄԵԾ ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

Ընտրողները, ժողովուրդն իրենց պատգամավորներից պետք է պահանջեն, որպեսզի նրանք մնան իրենց խնդիրների բարձրության վրա, որպեսզի նրանք իրենց աշխատանքում չիջնեն մինչև քաղաքական օբիվատելների մակարդակը, որպեսզի նրանք մնան լենինյան տիպի քաղաքական գործիչների պոստի վրա, որպեսզի նրանք լինեն նույնպես պարզ ու որոշակի գործիչներ, ինչպես Լենինը, որպեսզի նրանք մարտում լինեն նույնպես անվախ և անողոք դեպի ժողովրդի թշնամիները, ինչպես Լենինն էր, որպեսզի նրանք ազատ լինեն որևէ խուճապից, խուճապի նման որևէ բանից, երբ գործն սկսում է բարդանալ և հորիզոնի վրա ուրվագծվում է որևէ վտանգ, որպեսզի նրանք նույնպես ազատ լինեն խուճապի նման որևէ բանից, ինչպես ազատ էր Լենինը, որպեսզի նրանք բարդ հարցերի լուծման ժամանակ, որտեղ պետք է բազմակողմանի կողմնորոշում և բոլոր

պլյուսների ու մինուսների բազմակողմանի հաշվառում, լինեն նույնպես իմաստուն և չաճապարող, ինչպես Լենինն էր, որպեսզի նրանք լինեն նույնպես ճշմարտացի ու ազնիվ, ինչպես Լենինն էր, որպեսզի նրանք նույնպես սիրեն իրենց ժողովրդին, ինչպես սիրում էր նրան Լենինը։

**Ի. Վ. ՍՏԱԼԻՆ**

Մեծ Լենինը դրեց սովետական պետության հիմքերը և մեր երկիրը դուրս բերեց սոցիալիզմի ուղին, որը վերջ դրեց մարդու կողմից մարդու բազմադարյան շահագործմանը։ Լենինի ուղին տանում է դեպի ժողովուրդների ազատությունն ու երջանկությունը, դեպի մարդկության ազատությունն ու երջանկությունը։

**Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ**

Ո՞ւմն ենք մենք պարտական, որ բազմամիլիոն երկիրը համախմբվել է որպես մի ամբողջություն, որպես անպարտելի պետություն։ Մենք պարտական ենք Լենինին,



մարդկության մեծագույն հանճարին, որը ոչ միայն կարողացավ ամենայն հետևողականությամբ կիրառել Ռուսաստանում Մարքս-Էնգելսի ռևոլյուցիոն թեորիան, այլև զարգացրեց, լրացրեց այն պրոլետարական ռևոլյուցիայի և պրոլետարական դիկտատուրայի ուսմունքով։ Մենք պարտական ենք Լենինին, որը դաստիարակեց բոլշևիկների պարտիան ցարիզմի դեմ մղված պայքարում, գլխավորեց Հոկտեմբերյան հեղաշրջումը, ապահովեց հաղթանակը քաղաքացիական պատերազմում և անցումը դեպի ավերված տնտեսության վերականգնումը։

Մենք պարտական ենք մեծ Ստալինին, որն այդպես հետևողականությամբ շարունակում է Լենինի գործը։

Ընկեր Ստալինը Լենինի դագաղի առաջ սրբազան երդում տվեց բարձր պահելու լենինիզմի մեծ դրոշը — մինչև վերջը հավատարիմ մնալու լենինյան պատգամներին և անդուլ շարունակելու Լենինի սկսած գործը։ Ընկեր Ստալինը սրբությամբ կատարում է իր տված երդումը։ Ընկեր Ստալինը ոչ միայն շարունակում է Լենինի գործը։ Անսահմանորեն հսկայական է ընկեր Ստալինի վաստակըն այն բանում, որ նա զարգացրեց ու

լրացրեց Լենինի ուսմունքը՝ սոցիալիստական հասարակության կառուցման դարաշրջանում։

**Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ**

Վլադիմիր Լենինը մեռավ։

Նույնիսկ նրա թշնամիների բանակից ոմանք ազնվորեն խոստովանում են, որ հանձին Լենինի աշխարհը կորցրեց մի մարդու, որն իր ժամանակակից բոլոր մեծ մարդկանց շարքում ամենից ավելի ցայտուն կերպով էր մարմնացնում իր մեջ հանճարեղությունը։

Նրա պորտրետը նկարել դժվար է... Նա պարզ էր և անկեղծ, ինչպես այն ամենը, ինչ նա ասում էր։

Նրա հերոսությունը համարյա բոլորովին զուրկ էր արտաքին փայլից, նրա հերոսությունը,— դա Ռուսաստանում ոչ հազվադեպ համեստ, ասկետական սխրագործություն է ազնիվ ռուս ինտելիգենտ ռևոլյուցիոների, որն անխախտ համոզված է սոցիալական արդարության հնարավորությանը երկրի վրա, դա հերոսությունն է այն մարդու, որը հրաժարվել է աշխարհի բոլոր ուրախություն-



ներից՝ մարդկանց երջանկության համար ծանր աշխատանք կատարելու նպատակով։

18 թվի աշնանը ես հարցրի սորմովցի բանվոր Դիմիտրի Պավլովին, թե ո՞րն է նրա կարծիքով, Լենինի ամենաբնորոշ գիծը։

— Պարզությունը։ Պարզ է, ինչպես ճշմարտությունը։

Նա այդ ասաց որպես լավ մտածված և վաղուց վճռված բան։

**ՄԱՔՍԻՄ ԳՈՐԿԻ**

Լենինն ապրում է ամենուրեք, որտեղ կան ռևոլյուցիոներներ։ Բայց կարելի է ասել, որ ոչ մի մարդու մեջ այնպես մարմնավորված չեն Լենինի միտքն ու խոսքը, ինչպես Ստալինի մեջ։ Ստալինը— Լենինն է այսօր։

**ԱՆՐԻ ԲԱՐԲՅՈՒՍ**

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ՄԱՍՍԱՅԱԿԱՆՑՆԵԼ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության 1948 թվի դեկտեմբերի 1-ի Հրամանագրի համաձայն, Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 85-րդ հոդվածի սկզբունքներով, Հայկական ՍՍՌ ժողովրդական դատարանների ընտրությունները բոլոր ընտրական օկրուգներում նշանակվել են 1949 թվականի փետրվարի 6-ին, կիրակի օրը։

Պետական իշխանության օրգանների սիստեմում հատուկ և կարևոր տեղ է գրավում դատարանը։ Այդ նկատառումով ժողովրդական դատարանների, որպես պետական իշխանության օրգանների, ընտրությունները բացառիկ և կարևոր նշանակություն ունեն։ Սովետական դատարանը հանդիսանում է պրոլետարիատի դիկտատուրայի հզոր և գործոն լծակը, որի օգնությամբ նա ամրապնդում է սոցիալիստական հասարակարգը։ Սովետական դատարանը ծառայում է Սոցիալիստական պետության շահերին, նա



անխզելիորեն կապված է սովետական ժողովրդի հետ և իրագործում է նրա կամքը՝ արտահայտված օրենքներում։

Վ. Ի. Լենինը «Սովետական իշխանության հերթական խնդիրները» հոդվածի ուրվագծի մեջ գրել է.— «Կապիտալիստական հասարակության մեջ դատարանը գերազանցապես ճնշման ապարատ, բուրժուական շահագործման ապարատ է եղել»։ (Լենին, հատոր 22. էջ—550, հայերեն հրատ.)։

Իսկ 1918 թվի հունվարին Համառուսական Սովետների 3-րդ Համագումարում Ժողկոմսովետի գործունեության մասին տված զեկուցման մեջ Լենինը բուրժուական դատարանի մասին ասել է, որ նա «ներկայացնում էր կարգ ու կանոնի պաշտպանություն, իսկ իրապես շահագործվողների անողոք ճնշման կույր, նուրբ գործիք էր, որ պաշտպանում էր փողի պարկի (քսակի) շահերը»։ (Լենին, հատ. 22. էջ 265, հայ. հրատ.)։

Ահա թե ինչու Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայից անմիջապես հետո Վ. Ի. Լենինի և ընկ. Ստալինի անմիջական ղեկավարությամբ արմատապես ոչնչացվեց հին բուրժուական դատական սիստեմը և ստեղծվեց նոր— սովետական արդարա-

դատության սիստեմ, հանձինս նոր, ժողովրդական դատարանի։

Սոցիալիզմի երկրի դատարանը հանդիսանում է ամենադեմոկրատական դատարանը աշխարհում։ Սովետական դատարանը պաշտպանում է ամեն տեսակի ոտնձգություններից մեր երկրի հասարակական և պետական կառուցվածքը, տնտեսության սոցիալիստական սիստեմը և սոցիալիստական սեփականությունը, քաղաքացիների իրավունքներն ու շահերը։ Սովետական դատարանը, կիրառելով պատժի միջոցները, ոչ միայն պատժում է սովետական օրենքները խախտողներին, հանցագործներին, այլև դաստիարակում է սովետական մարդկանց հայրենասիրության ոգով, սոցիալիստական սեփականության խնամքով և ազնվորեն վերաբերվելու, սոցիալիստական հանրակեցության կանոնները հարգելու ոգով։ Ահա թե ինչպես սովետական դատարանը արմատականորեն տարբերվում է բուրժուական դատարանից։

Սովետական դատարանների ողջ գործունեությունը տոգորված է իսկական դեմոկրատիզմով։ Դատարաններում գործերի քննությունը կատարվում է դռնբաց, ապահովվում է մեղադրյալի պաշտպանության իրավունքը,



դատավարությունը կատարվում է մայրենի լեզվով, այդ լեզվին չտիրապետող անձերի համար ապահովելով լիակատար ծանոթացումը գործի նյութերին թարգմանի միջոցով, ինչպես նաև ապահովվում է դատարանում մայրենի լեզվով հանդես գալու իրավունքը։ Բոլոր քաղաքացիները, անկախ իրենց հասարակական և պաշտոնական դիրքից, ազգային պատկանելիությունից հավասար են օրենքի առաջ։ Մեզ մոտ դատավորները անկախ են և միայն օրենքին են ենթարկվում. այդ նշանակում է, որ դատավորները կոնկրետ գործերը լուծելիս և այդ գործերով դատավճիռ կամ վճիռ կայացնելիս միայն և միայն ելնում են սովետական օրենքի ոգուց։

Սովետական դատական սիստեմի տարբերիչ հատկանիշն է հանդիսանում նրա բոլոր օղակների ընտրականությունը։ Հայկական ՍՍՌԿոնստիտուցիայի 85-րդ հոդվածում ասված է.— «Ժողովրդական դատարաններն ընտրում են շրջանի քաղաքացիները ընդհանուր, ուղղակի և հավասար ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ, 3 տարի ժամանակով»։

Ժողովրդական դատարանների ընտրությունները անց են կացվում մեր երկրում առաջին անգամ և կազմակերպական տեսա-

կետից, ի տարբերություն տեղական Սովետների՝ ունեն իրենց առանձնահատկությունները։

Կանոնադրության 4-րդ հոդվածի համաձայն ժողովրդական դատարանի (ժողովրդական դատավորի և ժողովրդական ատենակալների) ընտրությունների ընտրական օկրուգն ընդգրկում է տվյա ժողովրդական դատարանի գործունեության տերիտորիայում բնակվող ամբողջ բնակչությունը։ Յուրաքանչյուր ընտրական օկրուգում ընտրվում են մեկ ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալներ՝ թվով 50-ից մինչև 75 մարդ։ Ընտրական օկրուգի ցուցակները, յուրաքանչյուր օկրուգում ընտրվող ժողովրդական ատենակալների թվի նշումով, հրապարակվում են Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության կողմից՝ ամենաուշը ընտրություններից 45 օր առաջ։

Կանոնադրության 23-րդ հոդվածի «գ» կետի համաձայն քաղաքային և շրջանային Սովետների Գործադիր կոմիտեները նշանակում են իրենց լիազորները յուրաքանչյուր ընտրական կետում ընտրական բյուլետենները ընդունելու և ձայները հաշվելու համար։

Ըստ կանոնադրության 24-րդ կետի ժողո-



վրդական դատավորի և ժողովրդական ատենակալի յուրաքընչյուր թեկնածուի օգտին տրված ձայները հաշվելու համար յուրաքանչյուր ընտրական կետում, շրջանային, կամ քաղաքային Գործադիր կոմիտեի լիազորներին կից կազմվում է հաշվիչ հանձնաժողով՝ բաղկացած 5—11 մարդուց։ Այդպիսի հաշվիչ հանձնաժողով կազմվում է նաև յուրաքանչյուր ընտրական օկրուգում՝ բաղկացած 5—7 մարդուց։

Կանոնադրության 2-րդ հոդվածի համաձայն ժողովրդական դատավոր և ժողովրդական ատենակալ կարող է ընտրվել մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացի, որը օգտվում է ընտրական իրավունքով և ընտրությունների օրը լրացրել է 23 տարին, բացառությամբ այն անձանց, որոնք ունեն դատվածություն։

Կանոնադրության 26-րդ հոդվածի համաձայն ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրելու իրավունքն ապահովվում է հասարակական կազմակերպությունների և աշխատավորների ընկերությունների— կոմունիստական պարտիական կազմակերպությունների, պրոֆեսիոնալ միությունների, կոոպերատիվ կազմակերպությունների, երիտա-

ձարդության կազմակերպությունների և կուլտուրական ընկերությունների համար, ինչպես նաև բանվորների և ծառայողների ընդհանուր ժողովների, զինվորական ծառայողների, գյուղացիների ընդհանուր ժողովներին, սովխոզների բանվորներին և ծառայողներին։ Ընտրություններից ամենաուշը 25 օր առաջ ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուներ առաջադրած հասարակական բոլոր կազմակերպությունները, կամ աշխատավորների ընկերությունները պարտավոր են գրանցել այդ թեկնածուներին համապատասխան Սովետի Գործադիր կոմիտեում։

Աշխատավորների դեպուտատների շրջանային կամ քաղաքային Սովետի Գործադիր կոմիտեն, ամենաուշը ընտրություններից 20 օր առաջ, պետք է հրապարակի ժողովրդական դատավորի և ժողովրդական ատենակալի համար յուրաքանչյուր գրանցված թեկնածուի ազգանունը, անունը, հայրանունը, տարիքը, զբաղմունքը, պարտիականությունը և թեկնածուին առաջադրած հասարակական կազմակերպության անունը։

Աշխատավորների դեպուտատների շրջանային կամ քաղաքային Սովետի Գործադիր կոմիտեի կողմից գրանցված թեկնածուին



առաջադրած յուրաքանչյուր կազմակերպության, ինչպես նաև յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովվում է այդ թեկնածուի օգտին ժողովներում, մամուլում և այլ եղանակներով անարգել ագիտացիա մղելու իրավունքը։

Ընտրությունների համար հատկացված շենքը ներկայացող ընտրողը հաշվիչ հանձնաժողովի անդամին ներկայացնում է ինքնությունը հաստատող որևէ վկայական և ընտրողների ցուցակում ստուգվելուց ու այդ ցուցակում նշվելուց հետո ստանում է երկու ընտրական բյուլետեն— մեկը ժողովրդական դատավորի ընտրության համար և մյուսը ժողովրդական ատենակալների ընտրության համար։

Ընտրությունների նախապատրաստման շրջանում մեծ և պատասխանատու խնդիրներ են կանգնած ագիտատորների առաջ, մանավանդ, որ ժողովրդական դատարանների ընտրությունների ժամանակ ըստ ընտրական օկրուգների վատահելի անձեր չեն ընտրվելու, ինչպես Սովետների ընտրությունների ժամանակ էր։ Թեկնածուների համար տարվող ագիտացիան ամբողջությամբ պետք է դլխավորեն ագիտատորները, որոնք միավորվում են ագիտ-կոլեկտիվներում ընտրական կե-

տերին կից։ Ագիտատորները պետք է Հայ-
կական ՍՍՌ ժողովրդական դատարանների
ընտրությունների կանոնադրությունը դարձ-
նեն բնակչության լայն խավերի սեփակա-
նությունը, աշխատավորներին բացատրեն
Սովետական դատարանի դերն ու նշանակու-
թյունը, նրա առավելությունները բուրժուա-
կան դատարանների նկատմամբ։ Այդ բոլորի
համար ագիտատորը պետք է լավ իմանա
ՍՍՌՄ-ի և Հայկական ՍՍՌ-ի Կոնստիտու-
ցիաները, պետք է ծանոթանա սովետական
դատարանակազմության հիմունքներին և
իմանա պարտիայի և սովետական կառավա-
րության ղեկավարների՝ սովետական օրի-
նականության և օրենսդրության մասին ա-
սած մտքերը։

Ագիտատորը պետք է ընտրողներին ծանո-
թացնի աշխատավորների հասարակական
կազմակերպությունների ընդհանուր ժո-
ղովների կողմից առաջադրված ժողդատա-
վորների և ժողատենակալների թեկնածունե-
րից յուրաքանչյուրի կենսագրությանը, հա-
սարակական-քաղաքական և աշխատանքային
գործունեությանը։

Հայկական ՍՍՌ-ում, ինչպես և ամբողջ
ՍՍՌՄ-ում, ժողովրդական դատարանների
ընտրությունների նախապատրաստությունը



տեղի է ունենում հետպատերազմյան Ստա-
լինյան հնգամյակի չորրորդ տարվա պլան-
ները կատարելու և գերակատարելու, հնգամ-
յակը ժամկետից շուտ, չորս տարում կա-
տարելու իրադրության մեջ։ Հայկական ՍՍՌ-
ում այժմ համաժողովրդական լայն շարժում
է սկսվել Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ Հա-
մագումարի որոշումները իրագործելու, երկ-
րի ժողովրդական տնտեսությունը և կուլտու-
րան նոր ծաղկման հասցնելու համար։ Ընտ-
րողներին այս հարցերի բացատրումը ագի-
տատորների առաջնահերթ պարտականու-
թյունն է։

Հ. ՄԵՍՐՈՊՅԱՆ

Վ. Մ. Մոլոտովի անվան Երևանի Պետ.
համալսարանի պետական իրավունքի
ամբիոնի վարիչ

———

## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՔՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

(Թվեր և փաստեր)

✪ Բուրժուական պետությունների մեջ դատավորներն ընտրվում են հարուստ մարդկանցից և հանդիսանում են կապիտալիստական հասարակակարգի հավատարիմ պահապանները։ Ցարական Ռուսաստանում, օրինակ, դատական պալատների անդամների 70 տոկոսը ազնվական ընտանիքներից էին, իսկ 12 տոկոսը վաճառականների դասից։

Հաշտարար դատավոր կարող էր լինել միայն նա, ով ուներ մի քանի հազար ռուբլու անշարժ կարողություն (հող, տուն, գործարան)։

Օրինակ, մայրաքաղաքում հաշտարար դատավորի պաշտոնը գրավելու համար անհրաժեշտ էր ունենալ ոչ պակաս, քան 15 հազար ռուբլու արժողությամբ անշարժ կարողություն։

✪ Բուրժուական դատարանը անկարող է հաջող պայքար տանել հանցագործությունների



դեմ, քանի որ ինքը, բուրժուական հասարակակարգը հանդիսանում է հանցագործությունների աղբյուր։ Կապիտալիստական երկրներում հանցագործությունը տարեց-տարի աճում է։ Միացյալ Նահանգներում, օրինակ, երկրորդ համաշխարհային պատերազմին նախորդող տարիներին, ամեն 20 վայրկյանում տեղի էր ունենում մի որևէ լուրջ հանցագործություն— սպանություն, կողոպուտ, հափշտակություն և այլն։ Ինչպես գրում է պրոֆեսոր Գերցենզոնը «Սովետսկոյե գոսուդարստվո ի պրավո» ամսագրում, մեկ տարվա ընթացքում տեղի է ունեցել 1.500.000 նշանավոր ՝ հանցագործություն։ Յուրաքանչյուր 48-րդ ամերիկացին հանդիսանում է հանցագործության զոհ։ Յուրաքանչյուր 16-րդ ամերիկյան ընտանիքի վրա տեղի է ունեցել հարձակում։ Մեկ տարվա ընթացքում սպանված է 12 հազար ամերիկյան քաղաքացի, այսինքն օրական սպանում էին 33 մարդ։ 50 հազար մարդ կողոպտվել են։ 100 հազար մարդու վրա կատարվել է հարձակում՝ կողոպտելու նպատակով։

Հանցագործությունների հսկայական աճը չեն կարողանում ժխտել նույնիսկ իրենք՝ ամերիկյան իշխանության ներկայացուցիչները։ 1945 թվին հետազոտությունների

ֆեդերալ բյուրոյի պետ Էդգար Գուվերը հայտարարեց. «Օրինազանցությունը հասել է ֆանտաստիկ չափերի. հանցագործությունների հսկայական աճը, որոնց մասին բղավում են թերթերը, չափազանցություն չէ... այս տարվա հոկտեմբեր ամսին, անցյալ տարվա հոկտեմբեր ամսի հետ համեմատած, լուրջ հանցագործությունների թիվը ավելացել է 19 տոկոսով։ Այդ թվում սպանությունները ավելացել են 32 տոկոսով, ավտոմեքենաների հափշտակությունը՝ 38 տոկոսով, կողոպուտները՝ 26 տոկոսով... Ֆեդերալ բյուրոյի հաշվառման քարտերը ցույց են տալիս հանցագործների 6 միլիոնանոց բանակ...»։

✪ Անգլիայում հանցագործությունների աճը տագնապ է առաջացնում նույնիսկ լորդերի պալատի անդամների մեջ։ Հանդես գալով լորդերի պալատում, լորդ-կանցլեր Ջոուատը տվյալներ բերեց, որոնք ցույց էին տալիս, որ 1948 թվի առաջին կեսին, դատական հետապնդումների ենթակա հանցագործների թիվը աճել է 30 տոկոսով։ Ամենից շատ ավելացել է մանր գողությունների թիվը։

---



# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ՀՆԳԱՄՅԱԿԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Լենինականի Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը հնգամյակը չորս տարում կատարելու համար մղվող պայքարում հանդիսանում է ֆաբրիկայի պարտիական կազմակերպության անմիջական, ակտիվ օգնականը։ Ագիտատորները ֆաբրիկայում սոցիալիստական մրցության կազմակերպման, ինչպես նաև պարտիական կազմակերպության նախաձեռնած բոլոր միջոցառումների կենսագործման առաջամարտիկներն են։

Ի՞նչպես է կազմակերպված աշխատանքը ագիտկոլեկտիվի ներսում։

Ագիտատորները սիստեմատիկ կերպով մասնակցում են քաղաքային մասշտաբով կազմակերպվող բոլոր կոնսուլտացիաներին ու խորհրդակցություններին։ Բացի այդ, ամ-

սակայն երկու անգամ ֆաբրիկայում հրավիրվում է ագիտկոլեկտիվի ժողով, ուր ամփոփվում է կատարված աշխատանքը և հանձնարարություններ է տրվում յուրաքանչյուր ագիտատորի՝ առաջիկա անելիքների վերաբերյալ։ Այդ ժողովներում լսվում են նաև առանձին ագիտատորների ինֆորմացիաներ իրենց կատարած աշխատանքի մասին։

Ագիտատորների ինֆորմացիաները հաճախակի լսվում են նաև պարտիական կազմակերպության բյուրոյի նիստերում։ Այսպես, օրինակ, 1948 թվի դեկտեմբերի 14-ին ֆաբրիկայի պարտկազմակերպության բյուրոն լսեց ագիտատորներ Շ. Մկրտչյանի, Ս. Չըթչյանի, Բ. Գալստյանի ինֆորմացիաները՝ ցեխերում ագիտացիոն-մասսայական աշխատանքը կազմակերպելու մասին։ Բյուրոն արձանագրեց, որ ճիշտ հասկանալով իրենց խնդիրները, նրանք ագիտացիոն աշխատանքը սերտորեն զուգակցել են արտադրության առաջ կանգնած խնդիրների լուծման հետ և հասել լավ արդյունքների։ Նախապատրաստական և բարակ ոլորող բանկաբրոշի ցեխերում, որտեղ ագիտացիոն-մասսայական աշխատանք են տանում ագիտատորներ Շ. Մկրտչյանը, Ս. Չթչյանը և Բ. Գալստյանը, զգալով ավելացել է իրենց արտադրական



առաջադրանքները կատարող և գերակատարող բանվորների թիվը։ Եթե մի քանի ամիս առաջ նախապատրաստական ցեխում միայն երկու բանվոր էին կատարել իրենց հնգամյա պլանը, ապա անցյալ տարվա հոկտեմբեր ամսին հնգամյա պլանը կատարողների թիվը հասավ 5-ի։ Այդ նույն ցեխում նոյեմբեր ամսին 17 բանվորներ արդեն կատարել էին չորս տարվա առաջադրանք։

Եթե մի ժամանակ բարակ ոլորող բանկաբրոշ մեքենաների վրա աշխատողների մեծագույն մասը չէր կատարում իր առաջադրանքները, ապա ագիտացիոն-մասսայական աշխատանքի շնորհիվ այժմ այնտեղ արտադրական նորմաները չկատարողների թիվը շատ աննշան տոկոս է կազմում։

Անցյալ տարվա վերջին ֆաբրիկայի մի խումբ բանվորուհիներ, վարպետներ ու ենթավարպետներ գործուղղվեցին Սովետական Միության առաջավոր ֆաբրիկաները՝ արտադրական էքսկուրսիայի։ Մեկնողների թըվում պարտկազմակերպությունը առաջադրեց նաև ագիտատոր ընկ. Ա. Բարսեղյանին։ Ընկ. Բարսեղյանը եղավ Մոսկվայի «Տրյոխգորնայա» և այլ խոշոր տեքստիլ ֆաբրիկաներում, ուր մանրամասն ուսումնասիրեց ագիտացիոն-մասսայական գործի դրվածքը և

այնտեղի հարուստ փորձը փոխադրեց մեր
ֆաբրիկան, պատմեց մյուս ագիտատորնե-
րին: Ավելի հմտորեն կազմակերպելով ագի-
տացիոն աշխատանքը, ընկ. Բարսեղյանը
մեծապես օգնեց այն բանին, որ մանարան
ցեխը դարձավ առաջավոր ամբողջ ֆաբրի-
կայում: Այժմ այդ ցեխում շատ հազվադեպ
են իրենց պլանները չկատարող բանվորները:

Ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը խոշոր աշ-
խատանք տարավ հնգամյակը չորս տարում
կատարելու վերաբերյալ լենինգրադցիների
նամակի մասսայականացման ուղղությամբ:
Օգնելով պարտիական և պրոֆմիութենական
կազմակերպություններին, ագիտատորները
ֆաբրիկայում լայնորեն ծավալեցին սոցիա-
լիստական մրցությունը: Նրանք հասան այն
բանին, որ ոչ մի բանվոր դուրս չմնաց հըն-
գամյակը 4 տարում կատարելու համար ծա-
վալված համաժողովրդական սոցիալիստա-
կան մրցությունից: Բայց ագիտատորներն ի-
րենց անելիքները դրանով ավարտված չհա-
մարեցին: Ինչպես ցեխային հավաքույթնե-
րում, բրիգադաներում անցկացրած զրույց-
ների միջոցով, այնպես և առանձին բանվոր-
ների հետ խոսելով, ագիտատորները լայնո-
րեն մասսայականացնում են առաջավոր
ստախանովականների փորձը, օգնում հետ-



մնացողներին՝ կատարելու իրենց առաջա-
դրանքները:

Եվ լայնորեն ծավալված սոցիալիստական
մրցությունը տվեց իր փայլուն արդյունքնե-
րը: Ֆաբրիկան 1948 թվի տարեկան պլանը
կատարեց երկու ամիս 5 օր շուտ, պլանից
դուրս երկրին տալով 170 տոննա մանվածք:
Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկան Լե-
նինականի ձեռնարկությունների թվում առա-
ջինն արտադրության մակարդակի գծով հա-
սավ 1950 թվի համար նախատեսված մա-
կարդակին:

Ագիտկոլեկտիվը եռանդուն աշխատանք
կատարեց Մոսկվայի 35 առաջավոր ձեռնար-
կությունների՝ արտապլանային կուտակումնե-
րի վերաբերյալ արած կոչի մասսայականաց-
ման և այն կենսագործելու ուղղությամբ:
Այդ կոչը քննության առնվեց ագիտկոլեկտի-
վի ժողովում, որտեղ յուրաքանչյուր ագիտա-
տորի տրվեց կոնկրետ հանձնարարություն:
Մինչև մոսկվացիների կոչը ֆաբրիկայի բան-
վորների ընդհանուր ժողովում քննության
առնվելը, ագիտատորներն այն մասսայա-
կանացրին ցեխերում ու բրիգադաներում:
Իսկ երբ ֆաբրիկայի կոլեկտիվը, ի պատաս-
խան մոսկվացիների, որոշեց 1948 թվին
երկրին տալ մեկ միլիոն 100 հազար ռուբլու

արտադրանային կուսակոմ, ագիտատոր-ներն իրենց ագիտացիան սկսեցին տանել այդ պարտականությունը պատվով կատարե-լու գործին նպաստելու ուղղությամբ։ Անցյալ տարի ֆաբրիկան արտապլանային սոցիա-լիստական կուտակումները հասցրեց մեկ մի-լիոն 300 հազար ռուբլու։ Այդ հաղթանակի մեջ էլ ֆաբրիկայի ագիտկոլեկտիվն ունի իր պատվավոր տեղը։

Մեր ֆաբրիկայի ագիտատորների զրույց-ների թեմատիկան հարուստ է ու բազմազան։ Սոցիալիստական մրցության, արտադրական այլ խնդիրների հետ միասին նրանք ա-մենօրյա զրույցների, զեկուցումների միջո-ցով գործարանի բանվորներին, ծառայողնե-րին և ինժեներա-տեխնիկական աշխատող-ներին են հասցնում մեր պարտիայի ու կա-ռավարության որոշումները, մոբիլիզացնում նրանց այդ որոշումների կենսագործման հա-մար, լուսաբանում միջազգային իրադրու-թյան հարցերը։

Ժողովրդական դատարանների ընտրու-թյունների վերաբերյալ Հայկական ՍՍՌ Գե-րագույն Սովետի Նախագահության Հրամա-նագրի հրապարակումից հետո ֆաբրիկայի ագիտատորները ձեռնամուխ եղան ինչպես բանվորների մեջ, այնպես էլ իրենց ամրաց-



ված թաղամասերում այն մասսայականաց-նելու, պարզաբանելու գործին։ Այս օրերին, երբ արդեն առաջադրվել են ժողդատավոր-ների և ատենակալների թեկնածուները, ա-գիտատորները ընտրողներին ծանոթացնում են իրենց թեկնածուների կենսագրությանը, Հայրենիքի համար կատարած նրանց աշխա-տանքին և համախմբում ընտրողներին՝ ի-րենց ձայնը տալու կոմունիստների և ան-կուսակցականների թեկնածուների օգտին։

Մոլոտովի անվան Մանարան ֆաբրիկայի ագիտկոլեկտիվը կարող է հպարտությամբ նշել, որ ֆաբրիկայում այժմ չկա ոչ մի ցեխ, որը թերակատարի իր պլանները և ստեղծվել են բոլոր պայմանները ստալինյան նոր հրն-գամյակը չորս տարում կատարելու համար։ Այդ պատվավոր խնդրի կատարմանն են նը-վիրել իրենց ամբողջ ուժերը ֆաբրիկայի ա-գիտատորները։

Վ. ՂԱՐԻԲՅԱՆ
Լենինականի Մոլոտովի անվան Մա-նարան ֆաբրիկայի պարտբյուրոյի քարտուղար

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

1. Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Երկեր, 5-րդ հատոր: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 751 էջ, գինը՝ 8 ռ.:*

2. ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— «Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 14-րդ համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 12.000, 121 էջ:*

3. Ա. ՉԵԽՈՎ.— «Ընտիր երկեր»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 536 էջ, գինը՝ 30 ռ.:*

4. Ի. ՏՈՒՐԳԵՆԵՎ.— «Ընտիր Երկեր»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 4000, 472 էջ, գինը՝ 20 ռ.:*

5. ԷԼՄԱՐ ԳՐԻՆ.— «Քամին հարավից»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 198 էջ, գինը կազմով 9 ռ.:*

6. Վ. ՊԱՆՈՎԱ.— «Ուղեկիցներ»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 282 էջ, գինը կազմով 14 ռ.:*



7. ՄԵՐՈՒՆ ԹՈՐԳՈՄՅԱՆ.— «Երկեր»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 3000, 313 էջ, գինը կազմով 16 ռ.:*

8. Վ. ԿԱՎԵՐԻՆ.— «Երկու կապիտան» *հատոր 1-ին: Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 6000, 513 էջ, գինը՝ 16 ռ.:*

9. Վ. ԿԱՎԵՐԻՆ.— «Երկու կապիտան»— *հատոր 2-րդ: Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 6000, 418 էջ, գինը՝ 9 ռ.:*

10. ԺՅՈՒԼ-ՎԵՌՆ.—«Տասնհինգամյա նավապետը»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 444 էջ, գինը կազմով 17 ռ.:*

11. «Սաֆ Իգորի ճակատամարտի մասին»: *Հայպետհրատ, 1948 թ.: Տիրաժ 5000, 126 էջ, գինը կազմով 8 ռ.:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

*ՎՖ 00061 Պատվեր № 876 Տիրաժ 9.200*

*Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
**БЛОКНОТ АГИТАТОРА**
№ 1 1949 г.

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1949 ԹՎԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկներում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**Տարեկան 24 համարը — 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**